Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 10 ՄԱՅԻՍ 1958

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

էջ

Նյութեր զրույցների համար

*Արդյունավետ օգտագործել գյուղատնտեսական տեխնիկան* . . . . . . . . 1

*Քիմիական արդյունաբերության հետագա զարգացման համար* . . . . . . . 8

Մ. ՄԵԼԻՔՅԱՆ— *Երեխաների պաշտպանության միջազգային օրը* . . . . . . . 18

Ագիտացիոն աշխատանքի փորձից

Հ. ՍԻՄՈՆՅԱՆ— *Ագիտատորները և սոցիալիստական մրցությունը* . . . . . . 30

Օգտագործիր զրույցի ժամանակ

*Կատարում են ստանձնած պարտավորությունները (թվեր և փաստեր)* . . . . . . . 37

Օգնություն ագիտատորներին

*Թեմաներ և գրականություն ագիտատորների հունիս ամսվա զրույցների համար* . . . . 44

---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։*



# ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՆ



*Սոցիալիստական դաշտերի, գյուղատնտեսության ֆրոնտի բոլոր աշխատավորները մեծ գոհունակությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի Փետրվարյան պլենումի՝ «Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու մասին» որոշումը։ Պարտիայի ինչպես մի շարք այլ, նույնպես և այս որոշումը ելնում է գյուղատնտեսության նոր, շեշտակի վերելք ստեղծելու, մի կողմից արդյունաբերությունը գյուղատնտեսական հումքով ապահովելու, մյուս կողմից սովետական ժողովրդի կենսամակարդակը էլ ավելի բարձրացնելու անհրաժեշտությունից։*

*Գյուղատնտեսությունը տեխնիկապես ըսպառազինելու, հետևապես և բերքատվությունը բարձրացնելու գործում, կոլտնտեսությունների կազմակերպման առաջին շըր-*





ջանում Սովետական պետության լուրջ օգնությունը եղավ մեքենա-տրակտորային կայանների կազմակերպումը։ Տարիներ շարունակ ՄՏ կայաններն անգնահատելի օգնություն ցույց տվեցին կոլտնտեսային գյուղացիությանը։ Շնորհիվ ՄՏ կայանների, մեր սոցիալիստական հողագործությունը վերազինվեց ժամանակակից բարձր տեխնիկայով, սովետական առաջավոր ագրոնոմիական գիտությամբ, իրագործվեց բազմահազար մեխանիզատորական կադրերի պատրաստումը, հողագործության և անասնաբուծության կուլտուրայի բարձրացումը։

Սակայն ներկայումս, երբ կոլտնտեսությունները պարտիայի և կառավարության ամենօրյա հոգատարության շնորհիվ տնտեսապես ու կազմակերպչորեն ամրապնդվել են, երբ աճել են կոլտնտեսային արտադրությունը կազմակերպող, փորձով ու գիտությամբ զինված հիանալի կադրեր, ՄՏ կայանների արտադրա-տեխնիկական օգնություն ցույց տալու ներկա ձևը լուրջ դժվարություններ է հարուցում կոլտնտեսությունների հետագա առաջընթացի և բուռն վարգացման գործում։

Ելնելով պարտիայի ցուցումից, ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ գումարման առաջին սեսիան հատուկ օրենք ընդունեց



ՄՏ կայանները վերակազմելու մասին, որտեղ ասված է նաև հետևյալը՝

«Հաշվի առնելով կոլտնտեսությունների տնտեսական ու կազմակերպական զարգացման ներկայումս ձեռք բերված մակարդակը, անհրաժեշտ համարել մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու նորոգման-տեխնիկական կայանների (ՆՏԿ)։ Մեքենա-տրակտորային կայաններին պատկանող տրակտորները, կոմբայնները և գյուղատնտեսական մյուս մեքենաները վաճառել այդ տեխնիկան գնելու ցանկություն հայտնած կոլտնտեսություններին։ Այն կոլտնտեսություններին, որոնք հնարավորություն չունեն միանգամից վճարել իրենց գնած տրակտորների և մեքենաների արժեքը, տարեկետում տալ, ելնելով նրանց տնտեսական վիճակից»։

Ի կատարումն պարտիայի Փետրվարյան պլենումի որոշման ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը հատուկ որոշում ընդունեցին ՄՏ կայաններում եղած տրակտորները, գյուղատնտեսական մեքենաները, մեխանիզմներն ու սարքավորումները կոլտնտեսություններին վաճառելու մասին։ Բացի այդ, որոշման մեջ լայն պարզաբանում է տրված՝ նորոգման-տեխնիկական կայանների, գյուղատնտեսության նյութա-տեխնի-

կական մատակարարումը կազմակերպելու, աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետների գործկոմների գյուղատնտեսության տեսչությունների մասին, ինչպես նաև կադրերի, կոլտնտեսությունների և ՆՏԿ-ների ֆինանսավորման ու վարկավորման մասին։

ՄՏ կայաններից իրենց համար անհրաժեշտ սարքավորումների գնման և առաջին օրերի աշխատանքի փորձը ցույց տվեց կոլտնտեսությունների ունեցած անսահման հնարավորությունները և պարտիայի ու կառավարության ընդունած որոշումների ճշտությունը։

Ոչ լրիվ տվյալներով ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները ՄՏ կայաններից գնել են հետևյալ մեքենաներն ու սարքավորումները՝ 1717 տարբեր տիպի տրակտոր, 572 հացահատիկային կոմբայն, 93 բամբակահավաք մեքենա, 15 սիլոսի կոմբայն, 204 կալսիչ, 1353 տարբեր տիպի շարքացան, 902 կուլտիվատոր, 432 սիլոսահատ, 299 երեսվարի գութան և բազմաթիվ այլ մեքենաներ ու գործիքներ։

Կոլտնտեսությունների շատ նախագահներ, մասնագետներ և մեխանիզատորներ հանդես գալով մամուլում, պատմում են կոլտնտեսությունների կողմից գյուղատըն-



տեսական մեքենաներ ձեռք բերելու, դրանք արդյունավետ օգտագործելու և դաշտային աշխատանքները հաջող կատարելու իրենց առաջին տպավորությունների մասին։ Ահա մի քանի օրինակներ։

Կոտայքի շրջանի Գառնի գյուղի կոլտընտեսությունը այս տարի գարնանացանը սկսեց իր ձեռք բերած 6 տրակտորներով։ Արդյունավետ աշխատացնելով մեքենաները կոլտնտեսությունը գարնանացանն ավարտեց սեղմ ժամկետում։ Բացի այդ, կոլտընտեսությունը գցել է հինգ հեկտար խաղողի նոր այգի, իսկ պտղատու այգիները ընդարձակել 7 հեկտարով։

Իջևանի շրջանի Հախկխլու գյուղի կոլտնտեսությունը սեփական մեքենաներով լրիվ և բարձր որակով կատարելով հացահատիկային կուլտուրաների և կարտոֆիլի ցանքը, ձեռնամուխ է եղել գյուղատնտեսական այլ աշխատանքների։ Ստեփանավանի շրջանի Կուրթան գյուղի կոլտնտեսությունը ՄՏ կայանից գնել է 4 տրակտոր, 4 կոմբայն, 1 կալսիչ, 4 շարքացան, ինչպես նաև կարտոֆիլ ցանող ու հանող, խոտ հնձող ու հավաքող, սիլոս պատրաստող և բազմաթիվ այլ մեքենաներ ու գործիքներ։ Սեփական մեքենաներով կոլտնտեսությունը ժամանակին կատարել է ցանքի աշխատանքները։

Կոլտնտեսության մեխանիզատորները բացի ցանքից կատարել են նաև 130 հեկտար խոր վար, 50 հեկտար կրկնավար։ Նրանք իրենց օրվա առաջադրանքները կատարում են 120—130 տոկոսով։ Այս բոլորից բացի կոլտնտեսությունը 90 հեկտար կարտոֆիլի ցանքը կատարել է տրակտորներով, մեքենայացման է ենթարկել 70 հեկտար եգիպտացորենի և 10 հեկտար ճակնդեղի վարի և ցանքի աշխատանքները։ Ձեռք են բերվել նաև այգիներ մշակելու և պտղատու ծառեր բուժելու առանձին սարքավորումներ։

Այսպիսի օրինակներ ու փաստեր կարելի է բերել նաև մեր ռեսպուբլիկայի ուրիշ շատ շրջաններից ու կոլտնտեսություններից։ Սակայն այսքանն էլ բավական է ցույց տալու այն դրական ու մեծ աշխատանքը, որ կատարվել է ՄՏ կայանները վերակազմելու կապակցությամբ։

Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու մասին պարտիայի և կառավարության որոշումները սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման նոր էտապ են ստեղծում։ Նոր թափով է բորբոքվում կոլտնտեսային աշխատավորության խանդավառությունը հացահատիկային և տեխնիկական կուլտուրաների ավելի բարձր



բերք ստանալու, անասնաբուծական մթերքների՝ կաթի, յուղի, մսի առատություն ստեղծելու համար։

Ոչ մի կասկած չկա, որ գյուղատնտեսության ֆրոնտի աշխատավորները անշեղորեն կկենսագործեն պարտիայի և կառավարության որոշումները գյուղատնտեսության շեշտակի վերելք ստեղծելու մասին, լրիվ և արդյունավետ կօգտագործեն գյուղատնտեսական տեխնիկան և կարճ ժամանակամիջոցում կհասնեն ու կանցնեն Ամերիկայի Միացյալ Նահանգներից մեկ շնչին ընկնող կաթի, մսի և յուղի արտադրությամբ։

---

# ՔԻՄԻԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

1958 թվականի մայիսի 6-ին կայացավ ՍՄԿԿ Կենտկոմի Պլենումը։ Պլենումը քննության առավ ՍՄԿԿ Կենտկոմի Առաջին քարտուղար և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ս. Խրուշչովի զեկուցումը՝ բնակչության պահանջմունքները և ժողովրդական տնտեսության կարիքները բավարարելու համար քիմիական արդյունաբերության և առանձնապես սինթետիկ նյութերի ու դրանցից պատրաստված առարկաների արտադրության զարգացումն արագացնելու մասին։

Այս հարցը խոշոր նշանակություն ունի մեր երկրի էկոնոմիկայի ինչպես առօրյա, այնպես էլ նրա հեռանկարային խնդիրների հաջող լուծումը ապահովելու գործում։ Անցած ավելի քան 40 տարիների ընթացքում հիմնովին փոխվել է մեր երկրի դեմքը՝ երբեմնի հետամնաց ցարական



Ռուսաստանը և նրա էլ ավելի հետամնաց ծայրամասերը սովետական ժողովրդի մեծագույն ջանքերի, Կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարության շնորհիվ այժմ վեր են ածվել հզոր ու առաջավոր սոցիալիստական էկոնոմիկա ունեցող ռեսպուբլիկաների, որոնց տնտեսական հաջողությունները այժմ ստիպված են ընդունել նույնիսկ Սովետական Միության ամենակատաղի թշնամիներն արտասահմանում։ Սոցիալիստական կարգի առավելությունների շնորհիվ պատմական ամենակարճ ժամանակամիջոցում մեր երկրում ստեղծվել են հզոր ծանր արդյունաբերություն և խոշոր մեքենայացված սոցիալիստական գյուղատնտեսություն։ Մեր Հայրենիքի էկոնոմիկայի հզոր վերելքը անհնարին է պատկերացնել առանց նրա առավել առաջատար ճյուղերի, այդ թվում և քիմիական արդյունաբերության հարաճուն զարգացման։ Դժվար է գերագնահատել քիմիայի նշանակությունն այսօր։ Այժմ կա՞ արդյոք կյանքի մի բնագավառ, որտեղ հնարավոր լիներ յոլա գնալ առանց քիմիայի։ Ո՛չ, այդպիսի բնագավառ չկա։ Քիմիան իր հաստատուն տեղն է գրավել մետաղամշակության, մեքենաշինության, նավթային, սննդի և արդյունաբերու-

թյան մյուս ճյուղերի զարգացման մեջ, մեր օրերում անհնարին է գյուղատնտեսությունը վարել առանց քիմիայի օգնության:

Քիմիական գիտության նվաճումները՝ դրանք նոր ստեղծված այն արժեքավոր նյութերն են, որոնք իրենց հատկություններով՝ ամրությամբ, թեթևությամբ և էժանությամբ լրիվ փոխարինում են նախկինում եղած շատ ու շատ թանկարժեք նյութերի: Հատկապես պետք է նշել պոլիմերների մասին: Պոլիմերները բարձրամոլեկուլային օրգանական միացություններ են, որոնց գոյացումը քիմիական պրոցեսներում կոչվում է «ձյութապատում»: Կոքսի արտադրության պրոցեսում ստացվում է մի հատուկ ձյութ, որը հումք է հանդիսանում պլաստմասսաների, ներկերի, դեղագործական արդյունաբերության և բուրավետ նյութերի արտադրության համար: Պլաստմասսաները ավելի թեթև են, քան բոլոր տեսակի մետաղները: Օրինակ, նրանք ալյումինից թեթև են երկու անգամ, իսկ պողպատից՝ 5—8 անգամ: Թեթևության հետ մեկտեղ նըրանք աչքի են ընկնում նաև իրենց բացառիկ ամրությամբ. կան պլաստմասսաներ, որոնք մի քանի տեսակ պողպատներից էլ ամուր են և կարող են կիրառվել տանկային զրահ,



հրթիռային շարժիչներ և ինքնաթիռներ պատրաստելու համար: Որոշ տեսակի պլաստմասսաներ խցանից թեթև են նույնիսկ 10 անգամ և ունեն ջերմա-ձայնամեկուսիչ բարձր հատկություններ: Դրանք հաջողությամբ կիրառվում են ինքնաթիռաշինության և ավտոմոբիլաշինության մեջ: Պլաստմասսաները լայն չափով օգտագործվում են մեքենաշինության մեջ: Պլաստմասսաներից պատրաստված առանցքակալները քսանյութ չեն պահանջում, մեծ ամրություն են տալիս քանանիվներին և աշխատելիս աղմուկ չեն հանում:

Պլաստմասսաները լայնորեն օգտագործվում են նաև մարդկանց կենցաղում: Դրանցից պատրաստվում են ստամարաններ, ռադիոընդունիչների, հեռուստացույցների, փոշեծծիչների, լվացքի մեքենաների կորպուսներ, կահույքի երեսպատման համար հատուկ նյութեր և այլն:

Մեր երկրում և արտասահմանում գնալով է՛լ ավելի լայն կիրառում են գտնում սինթետիկ թելերը, որոնք իրենց բաղադրությամբ, տեսքով, սպառողական հատկություններով ժողովրդական սպառման ապրանքների արտադրության նոր տեսակի հումք են և իրենց մի շարք հատկություն-

ներով գերազանցում են բնական թելերին։

Սինթետիկ նյութերից կարած մորթեղենը, վերնազգեստը, տրիկոտաժեղենը, կոշիկը աչքի են ընկնում իրենց բարձր որակով և էժանությամբ։ Եթե բնական կարակուլից պատրաստված ականջավոր գլխարկն արժե 367 ռուբլի, ապա արհեստական կարակուլից պատրաստվածն արժե 60 ռուբլի, կանացի բնական մորթե վերարկուն արժե 4000 ռուբլի, իսկ արհեստական մորթուց պատրաստված վերարկուն կարժենա 1000 ռուբլի։

Սինթետիկ թելերը իրենց ամրությունը չեն կորցնում թաց վիճակում, ինչպես այդ լինում է բնական մետաքսի հետ։ Առանձնապես լավ համբավ ունեն լավսան տիպի թելերը, որոնք ամուր են, առաձգական, արտաքին տեսքով բրդին նման և հեշտ հյուսվող։ Դրանցից պատրաստված գործվածքները չեն ճմրթվում, նախապես ստեղծված ծալքերը չեն անցնում նույնիսկ թրջելիս, իսկ այդպիսի գործվածքներից պատրաստված կոստյումները արդուկելու կարիք չունեն։

Այդ թելերից պատրաստված կտորեղենը օգտագործվում է նաև բժշկության բնագավառում։ Օրինակ, «քլորին» կոչվող սինթե-



տիկ կտորից պատրաստված սպիտակեղենը օգնում է ռադիկուլիտ, պոդագրա և ռևմատիզմ ունեցող հիվանդներին բուժելու գործում։

Կյանքի ամենատարբեր բնագավառներում քիմիական նյութերի և առանձնապես սինթետիկ նյութերի լայն օգտագործման շատ օրինակներ կարելի է բերել։ Սակայն նշված օրինակներն էլ բավական են պատկերացնելու համար քիմիայի մեծագույն դերը մեր կյանքում։ Ահա թե ինչու դժվար չէ ըմբռնել այն կարևորությունը, որ այդ հարցին տվեց ՍՄԿԿ Կենտկոմը՝ իր Մայիսյան պլենումում հատուկ որոշում ընդունելով քիմիական արդյունաբերության հետագա զարգացման մասին։

«Քիմիական արդյունաբերության և ամենից առաջ սինթետիկ նյութերի արտադրության ավելի արագ զարգացումը,— ասված է Պլենումի որոշման մեջ,— ... կլինի ամբողջ ժողովրդական տնտեսության տեխնիկական առաջադիմության, ծանր արդյունաբերության հետագա վերելքի կարևորագույն գործոն և ժողովրդական սպառման ապրանքների արտադրության համար հումքի նոր վիթխարի աղբյուր»։

ՍՄԿԿ Կենտկոմի Պլենումը հավանու-

թյուն տվեց բնակչության պահանջմունքները և արդյունաբերության կարիքները բավարարելու համար քիմիական արդյունաբերության ավելի արագ զարգացման և հատկապես արհեստական ու սինթետիկ թելի, պլաստմասսայի և այլ սինթետիկ նյութերի ու դրանցից պատրաստված առարկաների արտադրությունն ավելացնելու ուղղությամբ ՍՄԿՊ Կենտկոմի Նախագահության ու ՍՍՌՄ Մինիստրների Սովետի մշակած միջոցառումներին, որոնք նախատեսնում են 1959—1965 թ. թ. քիմիական կարևորագույն նյութերի արտադրությունն ավելացնել առնվազն 2—3 անգամ, իսկ արհեստական ու սինթետիկ թելի և պլաստմասսայի արտադրությունը՝ 4,5—8 անգամ։

Դրա հիման վրա 1965 թվականին բրդե գործվածքների թողարկումը հասցվելու է 500 միլիոն մետրի, այդ թվում արհեստական ու սինթետիկ թելի հետ խառը գործվածքներինը՝ 450 միլիոն մետրի, մետաքսե գործվածքներինը՝ 1 միլիարդ 485 միլիոն մետրի, այդ թվում արհեստական ու սինթետիկ թելի հետ խառը բամբակե գործվածքների թողարկումը՝ 480 միլիոն մետրի, տրիկոտաժե հագուստեղենինը՝ 940 միլիոն հատի, արհեստական կարակուլինը՝ 5 միլիոն



քառակուսի մետրի, կոշիկինը՝ 515 միլիոն զույգի և այլն։

Ժողովրդատնտեսական այդ վիթխարի խնդիրը հաջողությամբ կենսագործելու համար ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը պարտիական, սովետական, արհմիութենական, կոմերիտական և տնտեսական օրգաններին պարտավորեցրեց քիմիական, մեքենաշինական ու թեթև արդյունաբերության աշխատողների, մեր բոլոր քիմիկոսների ջանքերն ուղղել քիմիական նոր ձեռնարկությունների կառուցումն ամեն կերպ արագացնելու, տեխնոլոգիական նոր առաջավոր պրոցեսներ և սարքավորման բարձր արտադրողական տեսակներ մշակելու, քիմիական նոր նյութերի ստացման առավել արդյունավետ մեթոդներ գտնելու համար։

Պարտիայի ինչպես բոլոր միջոցառումների, այնպես էլ այս խնդրի իրագործման ժամանակ իր ակտիվ մասնակցությունն է ցուցաբերել լենինյան փառապանծ կոմերիտմիությունը։ Ինչպես խամ ու խոպան հողերի յուրացման ժամանակ, այնպես էլ այժմ տասնյակ հազարավոր երիտասարդ էնտուզիաստներ ջերմորեն հավանություն տալով պարտիայի այդ կարևորագույն որոշմանը, իրենց բարձր հայրենասիրական պարտքն են

համարում անմիջականորեն մասնակցելու համաժողովրդական այդ վիթխարի խնդրի իրականացմանը։ Կոմերիտմիության այդ հայրենասիրական նախաձեռնությունը հավանության արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի Պլենումի կողմից։

Պլենումը ՍՍՌՄ Մինիստրների Սովետին, միութենական ռեսպուբլիկաների Մինիստրների Սովետներին և ժողտնտխորհուրդներին հանձնարարեց 1959—1965 թվականների պլանում նախատեսել անհրաժեշտ կապիտալ ներդրումներ՝ քիմիական արդյունաբերության մեջ, բնական և ուղեկից գազերի, նավթավերամշակման գազերի և կոքսաքիմիական ձեռնարկությունների նյութերի առավել լրիվ օգտագործում սինթետիկ նյութեր և քիմիական այլ արտադրանք ստանալու համար։ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը միաժամանակ նրանց պարտավորեցրեց զգալիորեն ավելացնել քիմիական նյութեր արտադրող և վերամշակող ձեռնարկությունների համար ժամանակակից բարձր արտադրողական ապարատների ու մեքենաների, դանազան սարքերի, արմատուրայի և ավտոմատացման միջոցների թողարկումը և այլ միջոցառումներ։

ՍՄԿԿ Կենտկոմի Պլենումը կարևորագույն



խնդիր համարեց՝ բնակչության լայն շրջաններում քիմիական գիտելիքների գիտատեխնիկական պրոպագանդայի լայն ծավալումը, արտադրության առաջավոր փորձի տարածումը և ժողովրդական տնտեսության մեջ սինթետիկ նյութերի կիրառումը։

Պլենումը վստահություն հայտնեց, որ սովետական ժողովուրդը հաջողությամբ կըկատարի այս նոր խնդիրը և նոր ավանդ կըմտցնի ՍՍՌՄ տնտեսական գլխավոր խնդրի՝ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ ամենակարճ ժամանակամիջոցում առավել զարգացած կապիտալիստական երկրներին հասնելու և անցնելու խնդրի լուծման գործում։

---

# ԵՐԵԽԱՆԵՐԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ

**ՄԱՐՈ ՄԵԼԻՔՅԱՆ**
ՀԿՊ Երևանի քաղաքային կոմիտեի
դպրոցական բաժնի վարիչ

*Արդեն վեցերորդ տարին է, ինչ ամբողջ աշխարհի առաջադեմ մարդիկ հունիսի 1-ը նշում են որպես երեխաների պաշտպանության օր։ 1952 թվականին Կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիան (ԿՄԴՖ) դիմեց աշխարհի բոլոր կանանց, բոլոր ծնողներին՝ կոչ անելով հունիսի 1-ին հանդես գալու երեխաների պաշտպանության օգտին, նրանց առողջության, ֆիզիկական և բարոյական գոյության օգտին, նոր պատերազմի սպառնալիքից նրանց փրկելու համար։ Դիմումի մեջ հատուկ կերպով ընդգծված էր. «Թող հունիսի 1-ը, Երեխաների պաշտպանության միջազգային օրը յուրաքանչյուր քաղաքում, յուրաքանչյուր գործարանում, յուրաքանչյուր գյուղում վերածվի աշխարհի բոլոր ժողովուրդների միջև խաղաղության, վստահության և եղբայրության հզոր ցույցի»։*



*Այս տարի երեխաների պաշտպանության օրը համընկնում է կարևորագույն իրադարձության հետ։ Հունիսի 1-ին Վիեննայում բացվում է Կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիայի 4-րդ կոնգրեսը։ Կոնգրեսի օրակարգի մեջ մտցրված են ժողովուրդների միջև բարեկամության ամրապնդման, կյանքի բոլոր բնագավառներում կանանց համար հավասար իրավունքներ նվաճելու, երեխաների կյանքի պայմանների և դաստիարակության բարելավման ու այլ հարցեր։*

*Երեխաների պաշտպանության միջազգային օրը մեր Հայրենիքում նշվում է որպես մեծ տոն, որպես բոլոր բարի կամքի տեր մարդկանց համերաշխության օր։*

*Ամեն մի ժողովրդի համար, ամեն մի ընտանիքի համար երեխաները հույսի, ուրախության և երջանկության աղբյուր են։ Նրանց դաստիարակությունից և կյանքի պայմաններից է կախված ժողովրդի, մարդկության ապագան։*

*ՍՍՌՄ-ում մայրության և մանկության հարցերը հասարակության ուշադրության կենտրոնում են գտնվում սկսած Հոկտեմ-*

թերյան ռևոլյուցիայի առաջին իսկ օրերից։
Երիտասարդ սովետական ռեսպուբլիկան,
որը ժառանգել էր հետամնաց և քայքայված
արդյունաբերություն և գյուղատնտեսու-
թյուն, սով ու աղքատություն, նույնիսկ
քաղաքացիական պատերազմի պայմաննե-
րում, չէր մոռանում երեխաների մասին։
Այդպես կարող էր վարվել նոր հասարա-
կարգը, դարավոր ստրկությունից և շահա-
գործումից ազատագրված հաղթական ժո-
ղովրդի Երկիրը։
Անցան տարիներ, ամրապնդվեց նոր սո-
ցիալիստական կարգը։ Երբեմնի հետամնաց
Ռուսաստանի տերիտորիայում, աշխատա-
վոր ժողովրդի ջանքերով, Կոմունիստական
պարտիայի ղեկավարությամբ աճել ու առ-
նականացել է մեր հզոր սոցիալիստական
տերությունը։

Երեխաների մասին մեր պարտիայի ցու-
ցաբերած հոգատարությունը, որը դարձել է
սոցիալիստական պետության գլխավոր
խնդիրներից մեկը, ՍՍՌՄ-ում ստեղծել է
բացառիկ պայմաններ երեխաների առող-
ջության, կրթության և դաստիարակության
համար։ Յուրաքանչյուր երեխայի մասին
հոգատարությունը մեր երկրում արտա-
հայտվում է դեռ մինչև նրա ծնվելը։ Հղի մայ-



րերի համար գոյություն ունի բժշկական
կոնսուլտացիաների լայն ցանց, աշխատա-
վոր կանայք մինչ ծննդաբերությունը և նրա-
նից հետո ապահովված են արձակուրդով։
Հատկապես ընդլայնվել է ծննդատների
ցանցը։ Եթե 1913 թվականին ցարական
Ռուսաստանի տերիտորիայում եղած ծննդ-
դատներն ունեին 6.824 մահճակալ, ապա
1957 թվականին ՍՍՌՄ-ի ծննդատներում կա-
յին 150 հազար մահճակալ, բացի դրանից
կոլտնտեսային ծննդատներում կային 30 հա-
զար մահճակալ։ Քաղաքներում համարյա
բոլոր ծննդաբերությունները տեղի են ու-
նենում ծննդատներում, գյուղական վայրե-
րում համարյա 90 տոկոսը։ Եթե ցարական
Ռուսաստանում ծննդաբերության ժամանակ
ամեն տարի մահանում էին 30 հազար կա-
նայք, ապա այժմ այդպիսի դեպքերը կրում
են բացառապես հազվադեպ բնույթ։

Ցարական Ռուսաստանում 1913 թվակա-
նին կար 28.000 բժիշկ, այժմ կա 350 հա-
զար բժիշկ, այդ թվում 40 հազար միայն
մանկական բժիշկ։ Դրա շնորհիվ երեխանե-
րի մահացությունը մեր Հայրենիքում ավելի
քիչ է, քան որևէ այլ երկրում։
Մանկամսուրներում տեղավորված են ա-
վելի քան մեկ միլիոն երեխաներ, իսկ ման-

կապարտեզներում՝ 3 միլիոնից ավելի։ Մշտական մանկապարտեզներից և մսուրներից բացի գյուղական վայրերում ստեղծված են սեզոնային մանկապարտեզներ և մսուրներ, որտեղ տեղավորված են մի քանի միլիոն երեխաներ։

Ներկայումս մշակվում են մանկական հիմնարկների շինարարության նոր տիպային նախագծեր։ Այդպիսի հիմնարկներում կտեղավորվեն 2—3 ամսեկան և մինչդպրոցական տարիքի երեխաներ։

Մեր երկիրն այժմ աշխարհում առաջին տեղն է գրավում կրթության թափով և մակարդակով։ Ընթացիկ տարում միայն 8—10-րդ դասարաններում սովորում են 4 միլիոնից ավելի աշակերտ։ Միայն 1933—1937 թվականներին, այսինքն՝ մեկ հնգամյակում ՍՍՌՄ-ում կառուցվել է 19 հազար դպրոց, այսինքն այնքան, որքան կառուցվել է ցարական Ռուսաստանում 200 տարվա ընթացքում։

Սովետական մարդիկ խորին երախտագիտությամբ են վերաբերվում ուսուցիչների, բժիշկների, դաստիարակների վիթխարի բանակին, այն մարդկանց, որոնց ամբողջ կյանքը նվիրված է երեխաների հետ տարվող աշխատանքին։ Կապիտալիզմի ոչ մի



Մասսայական դպրոցներում դասավանդում են ավելի քան 20 հազար ուսուցիչներ։ Երեխաների և մայրերի առողջության պահպանությունը ապահովված է բազմաթիվ բուժհիմնարկների առկայությամբ։ Այդ հիմնարկներում աշխատում են ավելի քան 3.000 բժիշկ, որոնց կեսը կանայք են։ Պատանիների, աղջիկների և երեխաների համար բաց են բարձրագույն ուսումնական հաստատությունների և գիտահետազոտական ինստիտուտների դռները։ Մինչև սովետական իշխանության տարիները Հայաստանի տերիտորիայում չկար ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն։

Վերջին 12 տարիների ընթացքում բազմազավակ և միայնակ մայրերը պետությունից ստացել են ավելի քան 640 միլիոն ռուբլու օգնություն։ Մոտ 1.200 մայրեր դաստիարակում են տասից ավելի երեխաներ և ստացել են «Հերոսուհի մայր» կոչում։

Նման պայմաններում են աճում և զարգանում երեխաները Եվրոպայի և Ասիայի ժողովրդա-դեմոկրատական երկրներում։ Սովետական մարդիկ հպարտանում են վերջին տասնամյակում ժողովրդական Չինաստանում ձեռք բերված խոշոր հաջողությունների համար։ Այսօր այդ երկրում սովորում են

աշխատանքի։ Մեր դպրոցը երիտասարդությանը դաստիարակում է սոցիալիստական հասարակությանը օգտակար լինելու ձգտման ոգով, անմիջական մասնակցություն է ցուցաբերում հասարակության համար անհրաժեշտ բարիքների արտադրության մեջ։

Կոմունիզմի վերջերս ավարտված 13-րդ համագումարում ունեցած իր ելույթում ՍՄԿԿ Կենտկոմի Առաջին քարտուղար ընկ. Ն. Ս. Խրուշչովը ցույց տվեց մեր երիտասարդության՝ կոմունիստական հասարակության կառուցողների հետագա կոմունիստական դաստիարակության հեռանկարները։ Նա հայտարարեց. «Այժմ, երբ մեր ժողովուրդը կառուցում է կոմունիզմի վեհ շենքը, մենք չենք կարող չմտածել այն մասին, թե ինչպիսի շինարարներ վաղը կգան մեզ փոխարինելու, որպեսզի ավարտեն այդ շինարարությունը։ Այդ պատճառով էլ Կոմունիստական պարտիան և նրա Կենտրոնական Կոմիտեն անդադրում հոգ են տանում երիտասարդ սերունդը համարձակ, ուժեղ, կենսուրախ, գաղափարապես կոփված և մեր գործի հաղթանակին խորապես հավատացող դաստիարակելու համար»։

Կենսագործելով ժողովրդական տնտեսության նոր վերելքի մասին ՍՄԿԿ 20-րդ հա-



մագումարի մշակած ծրագիրը, ՍՄԿԿ Կենտկոմի Մայիսյան պլենումը նշեց մեր քիմիական արդյունաբերության զարգացման հոյակապ հեռանկարները, որոնց իրականացման շնորհիվ լիակատար կբավարարվեն սովետական ժողովրդի հարաճուն պահանջները հագուստի, կոշիկի, կտորեղենի, տնային գործածության առարկաների նկատմամբ։

Այս բոլորը մեր երկրի աշխատավորների երեխաների համար պայմաններ է ստեղծում, որպեսզի նրանք աճեն առողջ, ունենան այն ամենը, ինչ անհրաժեշտ է բազմակողմանի զարգացման, երջանիկ մանկության համար։

Նոր սերնդի դաստիարակման գործում մեծ են հաջողությունները նաև մեզ մոտ, Սովետական Հայաստանում։ Դեռևս ոչ հեռու անցյալում, դաշնակների տիրապետության ժամանակ Հայաստանը, որբերի, քաղցած ու շրջմոլիկ երեխաների երկիր էր։ Այժմ մեր ռեսպուբլիկան ծածկված է մանկամսուրների, մանկապարտեզների, դպրոցների և բարձրագույն ուսումնական հաստատությունների լայն ցանցով։ Մեզ մոտ կան 1.287 մասսայական դպրոց, չհաշված տեխնիկումներն ու մյուս միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները։

երկրում ժողովրդական ուսուցչի, բժիշկի հեղինակությունն այնպես բարձր կանգնած չի եղել և չի կարող լինել, ինչպես սոցիալիզմի երկրում։

Ուսուցիչների բանակը բաղկացած է 1 միլիոն 700 հազար մարդուց։

Երեխաների պաշտպանության միջազգային օրը համընկնում է դպրոցներում ուսումնական տարին ավարտվելուն նվիրված տոնին, ամառային պիոներական ճամբարների բացմանը, մսուրների և մանկապարտեզների ամառանոց մեկնելուն։ Անցյալ տարի պիոներական ճամբարներում իրենց հանգիստն անցկացրին 6 միլիոն երեխա, պատանիներ և աղջիկներ։

Սկսած 1951 թվականից քաղաքներում սահմանված է ընդհանուր պարտադիր միջնակարգ կրթություն։ Պարտիայի 20-րդ համագումարը պարտավորեցրեց անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել այն բանի համար, որպեսզի այս հնգամյակում ընդհանուր միջնակարգ կրթության մեջ ընդգրկել նաև գյուղական շրջանները։

Սովետական դպրոցը պատրաստում է բազմակողմանիորեն կրթված մարդիկ, որոնք լավ գիտեն գիտության հիմունքները և միաժամանակ ընդունակ են սիստեմատիկ



60 միլիոն երեխա, բայց չէ՞ որ ոչ հեռավոր անցյալում Չինաստանում երեխաների բաժինը՝ սովն ու աղքատությունն էր։

Միանգամայն այլ, հակառակ պատկեր ներկայացնող պայմաններում են դիմավորում Հունիսի 1-ը կապիտալիստական երկրներում։ Նույնիսկ ամերիկյան «դեմոկրատիայի և ամերիկյան ապրելակերպի» ջատագովների փառաբանած ԱՄՆ-ում երեխաների կյանքի և դաստիարակության համար գոյություն ունեն ծանր պայմաններ։ ԱՄՆ-ում Հունիսի 1-ը կնշվի արտադրության նոր անկման և գործազրկության աճման պայմաններում։ Փողոց են նետված միլիոնավոր երեխաներ։ Մռայլ հեռանկարներ ունեն նրանք, ովքեր դեռևս աշխատում են, աշխատանքը կորցնելու սարսափը կախվել է միլիոնավոր աշխատավորների գլխին։ Նորից քաղաքային բուլվարների և պուրակների նստարանները դարձել են գիշերելու միակ տեղը անտուն մարդկանց և հատկապես երեխաների համար։ Տարեցտարի ավելի են կրճատվում ժողովրդական կըրթության և առողջապահության համար նախատեսվող ծախսերը և աճում աշխատավորներից գանձվող պետական հարկերը, որոնք կազմում են նրանց աշխատավարձի

մեկ երրորդը։ Ո՞ւր են գնում այդ վիթխարի գումարները։ Կործանիչ ատոմային պատերազմի նախապատրաստման նպատակին։ Ամեն ինչ ենթարկված է ամերիկյան իմպերիալիզմի այդ հիմնական դիրքորոշմանը։

ԱՄՆ-ում երեխաները տառապում են ոչ միայն նյութական անապահովվածությունից, լայն ժողովրդական կրթության և ժողովրդական առողջապահության պայմանների բացակայությունից, դրա հետ միասին այնտեղ երեխաները բարոյալքվում են։ Հոլիվուդի արտադրած վիթխարի քանակությամբ գանգստերային կինոնկարները, բազմաթիվ կոմիկսները և պոռնոգրաֆիական հրատարակությունները բարոյապես սպանում են երեխաներին դեռ վաղ հասակից։

Իսկ ինչպիսին է արդյունքը։ Տարեցտարի ԱՄՆ-ում աճում է մանկական հանցագործությունը։ Նմանվելով հոլիվուդյան կինոնկարների հերոսներին, երեխաները կազմակերպում են տնային, թաղային և երբեմն էլ ամբողջ շրջանային շայկաներ և զբաղվում են թալանով ու նույնիսկ սպանությամբ։ Մանկական հանցագործությունների թիվը 1957 թվականին հասել է սպառնալի չափերի։

Ամերիկյան իմպերիալիզմը մարդկությա-



նը հրում է դեպի կործանիչ ատոմային պատերազմի։ Տարեցտարի աճում են կապիտալիստական երկրների ռազմական բյուջեները։ Խաղաղ օվկիանոսի և Սահարա անապատի լայնարձակ տարածությունները վեր են ածվել իմպերիալիստական երկրների ատոմային ու ջրածնային ռումբերի փորձարկման վայրերի։

Հատկապես ծանր է երեխաների դրությունը սև մայրցամաքի գաղութային և կիսագաղութային երկրներում։ Այստեղ երեխաների 50 տոկոսը մահանում է, չհասնելով նույնիսկ մեկ տարեկանի, բացակայում է բժշկական օգնությունը և ժողովրդական կրթությունը։

Հունիսի մեկին բոլոր ռասաների և ազգերի միլիոնավոր կանայք և տղամարդիկ իրենց ձայնը կբարձրացնեն ընդդեմ նոր պատերազմի սպառնալիքի, ի պաշտպանություն երեխաների կյանքի։

---

# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

Հ. ՍԻՄՈՆՅԱՆ

*Ալյումինի գործարանի կոլեկտիվը, մանելով սոցիալիստական մրցության մեջ, պայքարում է տարեկան արտադրական պլանը ժամկետից շուտ կատարելու համար։ Կոլեկտիվը պարտավորվել է աշխատանքի արտադրողականության պլանը կատարել 102,2 տոկոսով, արտադրանքի ինքնարժեքն իջեցնել 0,5 տոկոսով, թողարկել բարձրորակ մետաղ, տնտեսել մեծ քանակությամբ հումք, օժանդակ նյութեր և էլեկտրաէներգիա։*

*Ստանձնած պարտավորությունները հաջողությամբ կատարելու համար բանվորներին և ինժեներա-տեխնիկական աշխատողներին լուրջ օգնություն են ցույց տալիս գործարանի ագիտատորները։ Լայնորեն տարածելով առաջավորների փորձը, սիստեմատիկորեն զրույցներ անցկացնելով տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման, արտա-*



*դրանքի որակի բարելավման, ինքնարժեքի իջեցման, աշխատանքային կարգապահության ամրապնդման և այլ կարևոր հարցերի մասին, ագիտատորները բանվորներին պարզաբանում են թե ինչպես կարելի է ավելի լավ աշխատել, կատարել և գերակատարել արտադրական առաջադրանքները։*

*Գործարանի էլեկտրոլիզի աշխատողները ագիտատորների օգնությամբ ուսումնասիրելով առաջավորների աշխատանքային մեթոդները և արմատավորելով Սովետական Միության նույնատիպ գործարանների ձեռք բերած հարուստ փորձը, աշխատում են հասնել այն բանին, որ ալյումինի ստացման էլեկտրոլիզի պրոցեսը տարվի ավելի քիչ բռնկումներով, նրա գործակիցը հասցվի 0,3-ի։ Այս միջոցառման կենսագործման շնորհիվ այժմ էլ ավելի է բարձրացել թողարկվող ալյումինի որակը, տնտեսվում է մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա։ Առաջավոր բրիգադիրներ Կ. Սարգսյանի, Ա. Ավագյանի և շատ ուրիշների ձեռք բերած հաջողությունները լայն կերպով մասսայականացվում է ագիտատորների կողմից։*

*Գործարանի ինժեներա-տեխնիկական աշխատողներին և բանվորներին մեծ մտահոգություն էր պատճառում այն հանգամանքը,*

որ օդամուղ մուրճերի անցքերը կարճ ժամանակ աշխատելուց հետո կորցնում էին իրենց շրջագծային ձևը և դառնում էլիպսաձև ու դըրանով շարքից դուրս գալիս։ Բանվոր Ա. Ասատրյանը զբաղվեց այդ հարցով։ Երիտասարդ ռացիոնալիզատորին օգնության հասավ աշխատանքի իր հարուստ փորձը և տեխնիկական գիտելիքները։ Երկար պրպտումներից հետո, նրան հաջողվեց կատարելագործել այդ պրոցեսը։ Նա առաջարկեց ճկուն խողովակի միջոցով շրջանաձև դարձնել մուրճի անցքը։ Առաջարկությունը փորձարկվեց և տվեց իր դրական արդյունքը։ Շնորհիվ այս մեթոդի վերականգնվեցին արտադրությունից հանված 30 մուրճ։ Ա. Ասատրյանի առաջարկության ներդրման շնորհիվ ցեխը տարեկան կտնտեսի 16.000 ռուբլի։ Հալված մետաղը մեկ չանից մյուսը լցնելու ժամանակ առաջանում էր մեծ այրում և զգալի քանակությամբ ալյումին դառնում էր ցածրորակ։ Այս ուղղությամբ սկսեց մտածել ռացիոնալիզատոր Հ. Մելքոնյանը և բավականին արժեքավոր առաջարկություն արեց։ Այդ առաջարկության ներդրման շնորհիվ հնարավորություն է ստեղծվում շլակը փոքր կտորներով հանել չանից և անմիջապես ենթարկել



նստեցման, կանխելով հալած մետաղի հետագա այրումը։ Տարեկան 80 հազար ռուբլի տնտեսման հետ միասին այս առաջարկության շնորհիվ պահպանվում է նաև մետաղի որակը։

Մեծ հետաքրքրություն է առաջացնում նաև վարպետ, ռացիոնալիզատոր Հ. Չախմախչյանի առաջարկությունը։ Մինչև օրերս էլեկտրոլիզի վաննաների անոդների իջեցումը և բարձրացումը կատարվում էր ձեռքի աշխատանքի միջոցով, որի հետևանքով դանդաղ էր ընթանում աշխատանքի պրոցեսը։ Հ. Չախմախչյանը գտավ, որ հնարավոր է այդ պրոցեսը մեքենայացնել։ Այժմ շնորհիվ ներս մղվող օդի, անոդների իջեցումը և բարձրացումը կատարվում է ավտոմատ եղանակով։ Այս իր հերթին հնարավորություն է տալիս կարգավորելու էլեկտրոլիզի պրոցեսը։ Գործարանի տեխնիկական խորհուրդը ուսումնասիրելով այդ նորարարական առաջարկությունները, գտավ, որ այն անհրաժեշտ է տարածել բանվորների մեջ։ Ցեխի ագիտատորներ Վ. Հակոբյանը, Հ. Փայտյանը, Գ. Մկրտչյանը և ուրիշներ անմիջապես ձեռնամուխ եղան այդ կարևոր գործին։

Ագիտատորների զրույցից հետո որոշ բրիգադաներ անհրաժեշտ համարեցին վերանա-

յել սոցիալիստական մրցությամբ իրենց ստանձնած պարտավորությունները և տեխնիկա-տնտեսական ցուցանիշների հետագա բարելավման համար կոնկրետ և լրացուցիչ պարտավորություններ վերցնել։ Էլեկտրոլիզի ցեխի կոլեկտիվը ագիտատորների օգնությամբ ընթացիկ տարվա անցած ամիսներին որոշակի հաջողությունների հասավ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, արտադրանքի ինքնարժեքը իջեցնելու ասպարեզում։

Ագիտատորների զրույցների թեմատիկ պլանում կարևոր տեղ են գրավում նաև աշխատանքային կարգապահության ամրապնդման հարցերը։ Այդ մասին զրույց անցկացրեց մեխանիկական վերանորոգման ցեխի ագիտատոր, Գ. Հովակիմյանը։ Ցեխի բանվորներից ոմանք ուշ էին գալիս աշխատանքի, ռացիոնալ կերպով չէին օգտագործում աշխատանքային ժամերը, որը բացասաբար էր անդրադառնում ցեխի արտադրողականության, հատկապես արտադրանքի որակի վրա։ Ագիտատորը իր զրույցի ընթացքում նրանց պարզաբանեց, որ յուրաքանչյուր բանվորի արդյունավետ աշխատանքը շատ բանով կարող է նպաստել վերցրած սոցիալիստական պարտավորությունների անթերի կատարմանը։



Ցեխի ամեն մի բանվոր,— ասաց նա,— պետք է լինի մրցության առաջավոր, կատարի և գերակատարի իր արտադրական առաջադրանքները, բարձրացնի արտադրանքի որակը։ Այժմ մեխանիկական վերանորոգման ցեխում աշխատանքային կարգապահությունը ամրապնդվել է, արդյունավետ է օգտագործվում բանվորական օրը։

Մեզ մոտ ամեն ամիս ստուգվում է սոցիալիստական մրցությամբ վերցված պարտավորությունների կատարման ընթացքը և ամփոփվում են արդյունքները։ Ագիտատորները մեծ աշխատանք են կատարում մրցության արդյունքները մասսայականացնելու գործում։ Գործարանը ընթացիկ տարվա առաջին եռամսյակի պլանը կատարեց ժամկետից շուտ 102,8 տոկոսով։ Մի շարք ցեխերի կոլեկտիվներ մեծ հաջողություններ են ձեռք բերել արտադրանքի որակը բարելավելու, հումքը, էլեկտրաէներգիան տնտեսելու ուղղությամբ։ Ագիտատորները այդ հաջողությունները լայնորեն մասսայականացրել են։

Գործարանի սկզբնական պարտկազմակերպության բյուրոն ամենօրյա օգնություն և ղեկավարություն է ցույց տալիս ագիտկոլեկտիվին սոցիալիստական մրցությունը ծավալելու գործում։ Լայն պայմաններ են ստեղծ-

վել ագիտատորների գործունեության համար։ Նրանք մշտական գործող ագիտպունկտի «ագիտատորի անկյունում» միշտ կարող են գտնել զրույցների համար անհրաժեշտ նյութեր։ Ագիտատորների աշխատանքը լուսաբանվում է «Ագիտատոր» պատի թերթում։

Ագիտպունկտին կից զեկուցողների 10 հոգուց բաղկացած խմբակի անդամները սիստեմատիկաբար զրույցներ են անցկացնում ցեխերում, տեղամասերում, հերթափոխություններում և բրիգադաներում։ Վերջերս մեծ հետաքրքրությամբ լսվեց զեկուցողների խմբի անդամ, գործարանի կապիտալ շինարարության բաժնի վարիչ Վ. Ստեփանյանի զրույցը՝ բանավանի զարգացման հեռանկարների մասին։

Ագիտատորներին օգնելու նպատակով սիստեմատիկաբար կազմակերպվում են սեմինար պարապմունքներ, կատարվում է լավագույն փորձի փոխանակում և մասսայականացում։ Ագիտատորներ Գ. Մկրտչյանը, Խ. Փիլթակյանը, Վ. Ռոստոմյանը, Մ. Մարգարյանը և շատ ուրիշներ ագիտացիոն աշխատանքի իրենց փորձը հաղորդում են դեռևս ագիտացիոն աշխատանքի քիչ փորձ ունեցող ագիտատորներին։

---



# ԿԱՏԱՐՈՒՄ ԵՆ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

## (ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

Երևան քաղաքի արդյունաբերության աշխատողները զգալի աշխատանք են կատարել նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի արմատավորման, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու և արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու ասպարեզում։ Ահա այդ մասին են խոսում ներքոհիշյալ թվերն ու փաստերը։

✪ Երևանի արդյունաբերական ձեռնարկությունները 1958 թվականի առաջին եռամսյակի պլանը համախառն արտադրանքի գծով կատարել են 105,1 տոկոսով և պլանից դուրս երկրին տվել 46,5 միլիոն ռուբլու արտադրանք։

✪ Քաղաքի ձեռնարկություններում արտադրանքի թողարկումը անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է 16,3 տոկոսով։ Բավականին իջել է թողարկվող արտադրանքի ինքնարժեքը։

✪ Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը այս տարվա առաջին եռամսյակի պլանը կատարել է 104,2 տոկոսով, տալով անցյալ տարվա նույն ժամա-

նակաշրջանի համեմատությամբ 6,9 տոկոս աճ։ Գործարանի նորարարների և գյուտարարների ռացիոնալիզատորական առաջարկությունների կիրառման շնորհիվ ստացվել է ավելի քան 2 միլիոն 600 հազար ռուբլու տնտեսում։

Խրոմպիկի գործարանի բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողները լայնորեն կիրառում են նոր տեխնիկան և առաջավոր տեխնոլոգիան, որոնց շնորհիվ զգալիորեն բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։ Նրանք այս տարի շահագործման են հանձնել նոր շոգեկաթսան և պտտվող չորացման վառարանը։

Գործարանը իր առաջին եռամսյակի պլանը կատարել է 113,8 տոկոսով, տալով անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ 51,1 տոկոսի աճ։

Այս տարվա առաջին եռամսյակում պլանով նախատեսված 6,5-ի փոխարեն արտադրանքի ինքնարժեքը իջավ 7,93 տոկոսով։ Գործարանում կառուցվել է լվացման և գոլորշիացման նոր ցեխ։ Արդեն ավարտվել է քիթքրոմատի ցեխի շինարարությունը։ Այս բոլորը հնարավորություն տվեցին գործարանին փետրվար ամսից անցնելու 6-ժամյա աշխատանքային օրվա։

Անցած 3 ամիսների ընթացքում ռետինա-տեխնիկական գործարանի կոլեկտիվը բավականին հաջողությունների է հասել պետական պլանների կատարման և տեխնիկա-տնտեսական ցուցանիշները բարելա-



վելու ուղղությամբ։ Առաջին եռամսյակի պլանը կատարելով 122,7 տոկոսով, գործարանը կարողացավ արտադրանքի թողարկումը անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի հետ համեմատած ավելացնել 25,4 տոկոսով։

Կոմպրեսորների գործարանի բանվորները, ինժեներներն ու տեխնիկները անընդհատ բարձրացնելով իրենց աշխատանքի տեխնիկական ու կուլտուրական մակարդակը, կարողացան ոչ միայն յուրացնել նոր տիպի ՎՈՒ—3/8 կոմպրեսորը, այլև կատարելագործել և գերազանցել նրա նախագծային տեխնիկական ցուցանիշները։ Գործարանի կոլեկտիվը սկսած տարվա սկզբից, յուրաքանչյուր ամիս կատարելով և գերակատարելով պետական առաջադրանքները, կարողացավ 1958 թվականի առաջին եռամսյակի պլանները կատարել 15 օր շուտ, երկրին տալով 483 հազար ռուբլու լրացուցիչ արտադրանք։ Այս տարվա առաջին եռամսյակում արտադրանքի ինքնարժեքը պլանով նախատեսված 9,7-ի փոխարեն իջել է 10,2 տոկոսի՝ որով կատարվել է 279 հազար ռուբլու խնայողություն։

Լավ աշխատանքով աչքի է ընկնում Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի մեխանիկական գործարանի կոլեկտիվը։ Անցած 3 ամսում այս գործարանում շահագործման է հանձնվել ձուլման ցեխի մաքրման տեղամասը. այդտեղ տեղադրվել են լրացուցիչ 3 հաստոց։ Գործարանում սկսվել է հրա-

կայուն ձուլվածքի եղանակով 10 նոր անուն դետալների արտադրությունը, որը հնարավորություն է ստեղծում ձուլման ցեխի յուրաքանչյուր քառակուսի մետրից ստանալ 2,5 անգամ ավել արտադրանք։ Այս միջոցառումների շնորհիվ գործարանն իր առաջին եռամսյակի արտադրական պլանը կատարեց 15 օր շուտ և երկրին տվեց 753 հազար ռուբլու լրացուցիչ արտադրանք։

✪ Թիթեղագլանման գործարանի կոլեկտիվը սիստեմատիկ պայքար տանելով արտադրանքի ինքնարժեքի իջեցման և աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, կարողացավ ժամանակից շուտ և անթերի կատարել գործարանի առջև դրված բոլոր տեխնիկա-տնտեսական ցուցանիշները։ Նա անցած երեք ամիսների ընթացքում աշխատանքի արտադրողականությունը բարձրացրել է 127 տոկոսով, պետական պլանները կատարել է 121,7 տոկոսով։

✪ Ինչպես միշտ, այնպես և այս տարի նոր տեխնիկայի արմատավորման ուղղությամբ լուրջ աշխատանք է տարվում Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրո գործարանում։ Այստեղ տարեցտարի ավելանում է թողարկվող արտադրանքի քանակը և բարելավվում որակը։ Այս տարվա առաջին եռամսյակում արտադրանքի թողարկումը անցյալ տարվա նույն ժամանա-



կաշրջանի համեմատությամբ ավելացել է 29,2 տոկոսով։

Նորարարների և գյուտարարների կողմից տրված առաջարկություններից գործարանը կատարել է 1,5 միլիոն ռուբլու տնտեսում։

✪ Երևանի էլեկտրաշարժիչների գործարանի կոլեկտիվը հոգ տանելով նոր տեխնիկայի ներդրման և արմատավորման մասին, կարճ ժամանակամիջոցում գործարանում տեղադրել է նոր հաստոցներ, սարքավորումներ ու մեխանիզմներ։ Արդեն գործող հաստոցների շարքը մտան գունավոր մետաղի ճնշման տակ ձուլող 4 նոր մեքենաները, որոնք հնարավորություն տվեցին գործարանին դետալների արտադրությունը ավելացնելու 30 տոկոսով և միևնույն ժամանակ բարձրացնելու ձուլարանի աշխատանքի արտադրողականությունը։

✪ Աշխատանքի արտադրողականության բարձրացմանը նպաստում է նաև նոր մամլիչների տեղադրումը, որոնց թիվը հասնում է 7-ի։ Այս բոլորի շնորհիվ գործարանում, էլեկտրաշարժիչների արտադրողականությունն այս տարի, 1957 թվականի համեմատությամբ, ավելանալու է 35 տոկոսով։ Գերակատարելով առաջին եռամսյակի պլանները, գործարանը պլանից ավելի պետությանը տվել է 1.007 էլեկտրաշարժիչ։

✪ Այս տարի աչքի ընկնող հաջողությունների է

հասել Երևանի էլեկտրալամպերի գործարանի կոլեկտիվը։ Անցած 3 ամիսների ընթացքում գործարանի կոլեկտիվը արտադրական պլանը համախառն արտադրանքի գծով կատարել է 113,1 տոկոսով, տալով 915 հազար ռուբլու արտապլանային արտադրանք։ 1958 թվականի առաջին եռամսյակի ընթացքում գործարանը կարողացավ աշխատանքի արտադրողականությունը, անցած տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, ավելացնել 16,5 տոկոսով։ Ընթացիկ տարվա 3 ամսում նա կարողացավ երկրին տալ մոտ 900 հազար էլեկտրական լամպեր։

Պահածոների գործարանի կոլեկտիվը մի շարք փոփոխություններ մտցրեց գործող սարքավորումների մեջ։ Դա հնարավորություն տվեց այս տարվա 3 ամիսների պետական պլանը համախառն արտադրանքի գծով կատարել 119,7 տոկոսով։ Գործարանը անցած հունվար, փետրվար և մարտ ամիսներում թողարկել է 2 միլիոն 225 հազար ռուբլու արտապլանային արտադրանք։ Առաջին եռամսյակի պետական պլանները կատարելով 15 օր շուտ, պահածոյագործները կարողացան պլանից դուրս թողարկել ևս 300 հազար պայմանական տուփ պահածո։

1958 թվականի անցած ամիսների ընթացքում Երևանի բրդյա նուրբ գործվածքեղենի ֆաբրիկայի կոլեկտիվը իր խանդավառ աշխատանքի շնորհիվ տնտեսական տարին փակեց լավ ցուցանիշներով։ Կոմբինատի ցեխերն աշխատելով համաչափորեն, առաջին



եռամսյակի պլանը կատարեցին 101,3 տոկոսով և երկրին տվեցին 488 հազար ռուբլու լրացուցիչ արտադրանք։ Միայն մանվածքային ցեխում խնայվել է ավելի քան 3 տոննա հումք։ Բարելավվել է արտադրանքի որակը։

Երևանի Չկալովի անվան կոշիկի ֆաբրիկայի կոլեկտիվը արտադրության մեջ տեղադրելով նոր մեքենաներ ու ցեխերում կազմակերպելով հոսքային աշխատանք, զգալիորեն բարձրացրեց աշխատանքի արտադրողականությունը, իջեցրեց արտադրանքի ինքնարժեքը և ստացավ կոշտ ու փափուկ կաշիների 3,5 տոկոս խնայողություն։ Այդ խնայողությունը հնարավորություն կտա ֆաբրիկային լրացուցիչ արտադրելու շուրջ 900 զույգ կոշիկ։ Դրանց շնորհիվ ֆաբրիկան առաջին եռամսյակի պլանները կատարեց 20 օր շուտ, տալով երկրին լրացուցիչ 500.000 ռուբլու արտադրանք և անցավ 7-ժամյա աշխատանքային օրվա։

Երևանի № 3 կոշիկի ֆաբրիկայի կոլեկտիվը պայքար տանելով նյութերի խնայողության համար, այժմ կոշտ և փափուկ կաշիների խնայողությունը հասցրել է 4—5 տոկոսի։ Մոտիկ ժամանակաշրջանում ֆաբրիկան կսկսի նոր տեսակի մանկական կոշիկների արտադրությանը, որի համար այնտեղ կառուցվում է նոր ցեխ։ Ֆաբրիկան իր առաջին եռամսյակի պլանը կատարել է 112,8 տոկոսով։

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀՈՒՆԻՍ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Կոմունիստական պարտիայի անդուլ հոգատարությունը բնակչության պահանջմունքները լիովի բավարարելու համար

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ավելի լրիվ չափով բավարարել ժողովրդի նյութական աճող պահանջմունքները, *ՍՄԿՊ XX համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1956, էջ 108—121։*

Բնակչության պահանջմունքները և ժողովրդական տնտեսության կարիքները բավարարելու համար քիմիական արդյունաբերության և առանձնապես սինթետիկ նյութերի ու դրանցից պատրաստված առարկաների արտադրության զարգացումն արագացնելու մասին, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, *ընդունված ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման առթիվ, 1958 թվականի մայիսի 6-ին, տպագրված «Ս. Հ»-ի 1958 թվականի մայիսի 9-ի համարում։*



Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում 1958 թվականի մայիսի 6-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մայիսի 10-ի և 11-ի համարներում։*

## 2. Գերազանց ցուցանիշներով կատարենք երկրորդ եռամսյակի արտադրական պլանները

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը բնակչության պահանջմունքները և ժողովրդա-տնտեսական կարիքները բավարարելու համար քիմիական արդյունաբերության և առանձնապես սինթետիկ նյութերի ու դրանցից պատրաստված առարկաների արտադրության զարգացումն արագացնելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մայիսի 9-ի համարում։*

Երևան—Կիև մրցությունը՝ *խմբագրական հոդված. տպագրված «Երևան»-ի 1958 թվականի ապրիլի 27-ի համարում։*

Ինֆորմացիոն նյութեր ստանձնած պարտավորությունները կատարելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի և «Երևան»-ի 1958 թվականի մայիս ամսվա համարներում։*

Գործարանի մարկայի համար, *«Ս. Հ.»-ի 1958 թվականի ապրիլի 24-ի խմբագրականը։*

### 3. Անընդհատ բարձրացնենք աշխատանքի արտադրողականությունը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, *Երկեր, հատոր 27, էջ 306—310, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Աշխատանքի արտադրողականության, արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի և կապիտալ շինարարության հարցերը, *ՍՄԿԿ XX համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1956։*

### 4. Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մայիսի 13-ի համարում։*

1958 թվականի Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի բացումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մայիսի 13-ի համարում։*

### 5. Արդյունավետ օգտագործենք գյուղատնտեսական տեխնիկան

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Օրենք կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու մասին, ընդունված ՍՍՌՄ Գերագույն Սովետի հին-



գերորդ գումարման առաջին սեսիայում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի ապրիլի 1-ի համարում։*

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեում և ՍՍՌՄ Մինիստրների Սովետում, *որոշում նորոգման-տեխնիկական կայանների մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի ապրիլի 20-ի համարում։*

Նոր Օրենքը գործողության մեջ, *տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 9-րդ համարում։*

### 6. Ավելի կազմակերպված և արդյունավետ օգտագործենք արոտավայրերը

*Օգտագործել տեղական նյութեր, զրույցի ընթացքում պարզաբանել առաջավոր հովիվների, նախրապահների աշխատանքի դրական փորձը՝ արոտավայրերը արդյունավետ օգտագործելու մասին։*

### 7. Կառուցենք արագ, էժան և լավ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ-ում բնակարանային շինարարությունը զարգացնելու մասին, ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի օգոստոսի 2-ի համարում։*

Արագացնել բնակարանային շինարարության տեմպը, *«Ս. Հ.»-ի 1958 թվականի ապրիլի 17-ի խմբագրականը։*

### 8. Երեխաների պաշտպանության միջազգային օրը

9. Ֆիզկուլտուրնիկի Համամիութենական օրը

10. Սովետական Միությունը պայքարում է կայուն և երկարատև խաղաղության համար։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սովետական կարգի պատմական հաղթանակները, զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում 1958 թվականի մայիսի 6-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մայիսի 10-ի համարում։*

ՍՍՌՄ Արտաքին Գործերի մինիստր Ա. Ա. Գրոմիկոյի հայտարարությունը Սովետական և օտարերկրյա թղթակիցների պրես-կոնֆերանսում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի ապրիլի 19-ի համարում։*

Սովետական Միության ներկայացուցչի ելույթը ՄԱԿ-ի անվտանգության խորհրդում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի ապրիլի 24-ի համարում։*

Համատեղ հայտարարություն *պրեզիդենտ Գամալ Աբդել Նասերի ՍՍՌՄ այցելելու կապակցությամբ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության և Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի կառավարության միջև տեղի ունեցած բանակցությունների արդյունքների մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մայիսի 17-ի համարում։*

---

## СОДЕРЖАНИЕ

Стр.

**МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД**

Эффективно использовать сельскохозяйственную технику . . . . . 1
За дальнейшее развитие химической промышленности . . . . 8
М. Меликян—Международный День защиты детей . . . . . 18

**ИЗ ОПЫТА АГИТАЦИОННОЙ РАБОТЫ**

Г. Симонян—Агитаторы и социалистическое соревнование . . . . 30

**ИСПОЛЬЗУЙ ВО ВРЕМЯ БЕСЕДЫ**

Выполняют взятые обязательства (цифры и факты) . . . . . . 37

**В ПОМОЩЬ АГИТАТОРАМ**

Темы и литература для бесед агитаторов на июнь . . . . . . 44

Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении

# БЛОКНОТ АГИТАТОРА

№ 10 1958 г.

ՎՖ 04661 Պատվեր 323 Տիրաժ 8705

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.։